

# ՄԻ ԱՆԳԱՄ

ԱԿՍԵԼ ԲԱԿՈՒՆՑ

Թանձր ծուխը լցվել էր կամարակապ սենյակը, որը նման էր գետնահարկ խուցի։ Ճրագը ծխի մեջ ավելի աղոտ էր լուսավորում, և նրանք, որոնք կռացել էին Պետրոգրադի քարտեզի վրա, ստիպված էին գործածել նաև մոմ և լուցկի, ավելի պարզ տեսնելու փողոցները, կառուցվող բարիկադները, կամուրջները, որ հարկավոր էր բաց կարիքի բարձրացնել, և վերջապես շենքերը՝ փոստը, հեռագրատուն, բանկերը, մինիստրությունները, և մանավանդ՝ զորանոցները, որ պետք էր անհապաղ գրավել։

— Ուրեմն նորից եմ հիշեցնում Ցեկայի կարգադրությունը, — խռպոտ ասաց Պավլովսկին, — առանց խուճապի, առանց երկյուղի... մենք պետք բանտարկենք ժամանակավոր կառավարությունը, Կերենսկուն, գլխավոր շտաբը... Պետք է գրավենք Ձմեռային պալատը, այնտեղ են նրանք բոլորը։ Պա՞րզ է...

Պա՛րզ է, — պատասխանեցին այս ու այն կողմից։

Ընկե՛ր Պավլովսկի, գիշերապահները կարո՞ղ են խարույկներ վառել, — հարցրեց մեկը։

Դա է՛լ ինչի՞ մասին ես հարցնում, — կշտամբեցին նրան։

Հանդարտ, ընկերներ։ Ժամանակը թանկ է։ Խարույկ չվառեք, որովհետև տաքանալու համար կրակի մոտ կհավաքվեն զանազան բաղբեններ, իսկ այդ հարկավոր չէ։

Անընդհատ ներս ու դուրս էին անում գնդացրի ժապավեններ կապած և ձեռքի նռնակներով զինված նավաստիներ, բանվորներ, կարմիրգվարդիականներ։ Նրանք ծանրախոհ մտնում էին այս և այն սենյակը, որոնք մթնամած էին, ինչպես խուցեր, և հաղորդում էին լուրեր, ստանում հրահանգներ և զենք։ Բակում անընդհատ աղմկում էին մոտո-

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 25-ԻՆ

(Կրճատ)

Նկ. ՄԻՀՐԱՆ ՍՈՍՈՅԱՆԻ

ցիկլետներ, ավտոներ, սուրհանդակների ձիերը դոփում էին փողոցներում:

Գալիս էին զորամասերի պատվիրակներ, որոնք հայտնում էին իրենց կամքը՝ կռվելու ապստամբող բանվորների հետ կողք-կողքի: Ոմանք միայն չեզոքություն էին խոստանում: Նրանք հեռանում էին ընկճված և իրենց հետ դեպի զորանոցներն էին տանում լուրեր ապստամբության մասին: Երբեմն գիշերային հետախույզները տեղեկություններ էին բերում քաղաքի շրջակայքում թշնամու կասկածելի զորաշարժերի մասին:

Ուժեղացնել հսկողությունը կամուրջների վրա... Կարմիրգվարդիականներին ուղարկել երկաթուղային կայարանները... Զինաթափել «Աստորիայի» սպաներին: Դիմադրության դեպքում անխնա եղեք: Ընկեր Մոլչին, ստուգեցեք ժամանակը:

Տասնմեկից տասը պակաս:

Եվ երկուսն էլ նայեցին ժամացույցներին:

Տասներկուսին ինձ զեկուցեք, որ «Աստորիան» մեզ այլևս չի խանգարի: Գնա՛ց:

Ծանր միջանցքների քարերի վրա լսվեց սապոգների մետաղյա ձայն, ապա շարժվեցին երեք բեռնատար մեքենա, և զինված նավաստիների խմբերը սլացան դեպի «Աստորիա»:

Ուրեմն, օղակել Նևայից մինչև Մարսյան դաշտը, ապա Մոյկայից մինչև Մարինյան պալատը: Հրետանին խփում է պալատի հրապարակի ուղղությամբ: Դրեցի՞ր. Վասյա... Հետո գրանատները...

Բայց հանկարծ ներս մտավ մեկը, որին երկու ժամ առաջ ուղարկել էին շտապ հանձնարարությամբ:

Նրանք փակեցին դարպասները... Բայց պատուհանների վրա գնդացիրներ կան: Սպասում են կազակների երկու էսկադրոնի:

Փակել Միլիոնի փողոցը և Նևայի գետափը մինչև կամուրջը: Դադարեցնել տրամվայների երթևեկությունն այդ փողոցներով: Զինաթափել էսկադրոնները, եթե մոտենան կամուրջին: Ովքե՞ր են «Ավրորայի» հետ կապ պահպանողները:

— Ներկա են, առաջ եկան երեք երիտասարդ և մի ծեր նավաստի՝ Ստեփան Բորգան:

Կրեյսերը մոտեցնել կամրջին... Հսկել ազդանշանին և անհապաղ կրակել Ձմեռային պալատի կողմը: Քսան նավաստի ուղարկել ընկեր Անտոնովին՝ պալատի վրա արշավելու...

Есть, ասաց Բորգան, առաջին անգամ՝ առանց կապիտանի: Դռան մոտ մեկն արագ նշանակեց ազգանունները և տրված հանձնարարությունը:

Մթին պատերի առջևով անխոս գնում էին չորս նավաստի: Ցուրտ էր, ծովից փչում էր խոնավ ու սառը քամի, փողոցներում հատուկենտ լապտերներն օրորվում էին, և նրանց հետ օրորվում էին ծառերի մութ ստվերները: Կույր էին դարպասները, պատուհանների փեղկերը, և ձայն չէր լսվում բարձր հարկերից: Երբեմն նրանք հանդիպում էին զինված գիշերապահների, որոնք նշանաբանից հետո թողնում էին նրանց:

Փոթորկվել էր ծովը: Վիթխարի ալիքները արշավում էին Նևայի հոսանքին հակառակ, գետը մռնչում էր, խփում ափերի գրանիտին: «Ավրորան» բոլոր լույսերը հանգցրել և զգույշ լողում էր դեպի Արքայական կամուրջը: Միաժամանակ նավաստիները մթնում հանում էին թնդանոթների պղնձե երախակալները և նրանց պողպատյա փողերը դարձնում դեպի Ձմեռային պալատը...



Առաջին զրահապատները գրավեցին Սենատի հրապարակից: Նույն ժամին, տաճարի առաջ դաշտային հրետանին հրաման ստացավ կարճ ճանապարհով միանալ ապստամբների զորամասերին: Ապստամբ զինվորների զորասյուները արշավում էին Մանեժի և Ինժեներական դղյակի կողմից: Կարմիրգվարդիականները Ալեքսանդրյան այգուց գնդակոծում էին Ձմեռային պալատի դարպասները:

Պալատի ներսից և հարևան շենքերի կտուրներից գնդացրային կրակով պատասխանում էին յունկերները: Գնդակները շառաչյով դիպչում էին ցուցանակների թիթեղներին, մայթի քարերին և աղմուկով փշրում հաստ ապակիները:

Վախեցած բուրժուաները փակել էին դուռ ու լուսամուտ, նրանց հետևը շարել բարձեր, սեղաններ, գրքեր: Եվ դողում էին ահավոր երկյուղից, դողում էին, անիծում և աղոթում:

Մոտ երեք-չորս հարյուր հոգուց մի բազմություն սպիտակ դրոշ բռնած մոտեցավ կարմիրգվարդիականների գծերին:

— Կանգնեցե՛ք,— և զրահավոր մեքենան դանդաղ մոտեցավ:

— Ճանապա՛րհ,— բազմությունից բղավեցին մի քանիսը: Նրանց մեջ կանացի մի ձայն կանչեց ամենից բարձր.

— Մենք Պետրոգրադի Դումայի և հասարակական հաստատությունների ներկայացուցիչներն ենք և գնում ենք խնդրելու ժամանակավոր կառավարության, որ դադարեցնի այս արյունահեղությունը:

— Չկա՛ ժամանակավոր կառավարություն, նա տապալված է: Կա՛ հեղափոխություն...

— Ճանապա՛րհ տվեք մեզ:

— Հեռացե՛ք կամուրջից, թե չէ՝ կրակում եմ:

— Ավազակնե՛ր, հայրենիքի դավաճաննե՛ր,— հիստերիկ ճիչով բղավեց այն կինը, որ կոմսուհի Պանինան էր...

— Հեռացե՛ք կամուրջից,— և գնդացիրը կրակեց օդի մեջ:

Հեռացան, պարոնները... Տեղի տվին բռնության ուժին և աղոթեցին աստծուն մայր Ռուսիայի փրկության համար. Երկյուղած ձայնով առաջ դավանության մինիստր Կարտաշևը:

Բազմությունը ետ նահանջեց:

— Կանգնե՛ք,— բղավեց երիտասարդ պահակը և ուղղեց հրացանը: Մի ավտո կանգնեց:

— Իջե՛ք ցած...

— Սա ի՞նչ անկարգություն է,— զայրացավ ավտոյի մեջ նստած պորտֆելով մարդը:

— Դուք պետք է ոտքով գնաք Սմոլնի,— հանգիստ պատասխանեց պահակը:— Իսկ մեքենան կմնա...

— Գիտե՞ք ես ով եմ,— ձայնը բարձրացրեց նա,— ես մինիստր Պրոկոպովիչն եմ... Ինչպե՞ս եք համարձակվում ձեռք բարձրացնել կառավարության անդամի վրա: Սա անկարգություն է: Ձեր ազգանունը, պարոն,— և գրպանից հանեց բլոկնոտը:

— Գնացեք Սմոլնի, այնտեղ ձեզ կասեն...

Եվ մինիստր Պրոկոպովիչը, որպես կալանավոր, ոտքով գնաց Սմոլնի:

Ժամը երեքից անց բոլոր զորամասերը հրաման ստացան.

— Ուժեղացրե՛ք գրոհը, գրավեցե՛ք պալատը... Շուտով Իլյիչը ելույթ կունենա Խորհրդում: Բանտարկվածներին և գերիներին ուղարկել Սմոլնի: Ձմեռային պալատը գրավող առաջին կոմիսարին հրամայում եմ անմիջապես ներսը սահմանել խիստ կարգ և առանց խուզարկության ոչ ոքի դուրս չթողնել:

Հրամանից հինգ րոպե հետո հանկարծ որոտացին «Ավրորայի» թնդանոթները՝ մեկ, երկու, ապա որոտացին Պետրոպավլովկայի կողմից: Դաշտային հրետանին, որ արդեն մոտեցել էր ապստամբներին, հրապարակից զարկեց արքաների ձմեռային տան դարպասներին: Լսվեց մի հուժկու ուռա, և բոլոր փողոցներից արշավեց զինված բազմությունը:

Ձմեռային պալատում գնդացիրները լռեցին:

Նավաստիների և կարմիրգվարդիականների մի զորասյուն խիզախ գրոհով մտավ բակը և ռումբերը պատրաստ՝ բարձրացավ մարմարյա սանդուղքներով: Առաջին գրոհայինների մեջ էին «Ավ-



բորտային» տասնյոթ նավաստի, որոնց թվում ծերունի Ստեփան Բորզան։

Գրոհողները մեծ եռանդով փնտրում էին Կերենսկուն։ Արդեն բանտարկել էին ժամանակավոր կառավարության անդամներին, զինաթափ էին արել յունկերներին և շարքի էին կանգնեցնում նրանց պալատից դուրս տանելու. սակայն բանվորների և նավաստիների առանձին խմբեր Ձմեռային պալատի բազմաթիվ սենյակներում և ներքնահարկում դեռևս փնտրում էին անփառունակ «Բոնապարտին»։

Մեկը հանկարծ ներքևից կանչեց.

— Բռնե՜լ ենք. բռնե՜լ ենք...

Մի քանի նավաստիներ Ստեփան Բորզայի հետ միասին ներքնահարկի մութ միջանցքում բանտարկել էին երկու հոգու՝ սև վերարկուների մեջ փաթաթված, և ոգևորված գոռում էին, դղրդացնելով կամարները։

Կոմիսարը նրանից վկայական պահանջեց։

Ծերունի նավաստու սուր աչքը սև վերարկուի տակ տեսավ էպոլետի ոսկե երիզը։ Նա ետ բացեց վերարկուի օձիքը։ Նույն պահին կոմիսարը կարդաց նրա վկայականը.

— Գեներալ-մայոր Բագրատունի. Պետրոգրադի մարզի շտաբի պետ...

Ստեփան Բորզան պոկեց գեներալի բրատնինգը և ոսկեզօծ էպոլետները։

Իսկ դրսում, Ձմեռային պալատի բակում, լսվում էր հոմերոսյան քրքիջ։ Հռհռում էր զինված բազմությունը, ծիծաղում էին և սպառնում։

Զինաթափ էին արել Կերենսկու վերջին հույսը՝ կանանց բատալիոնը։

* * *

Պետրոգրադի Խորհրդի նիստի ժամանակ անսպասելի կերպով ներս մտավ գորշ վերարկուով մի մարդ։ Նա մի վայրկյան նայեց ոգևորությունից հուզված պատգամավորների բազմությանը, որոնց վրա թանձր ծուխը ծփում էր, և օրորվում էին ջահերի ոսկե ժանյակները։ Գորշ վերարկուով մարդը նայեց մի վայրկյան, ապա հաստատ քայլերով մոտեցավ ամբիոնին։

Դահլիճում աղմուկը դադարեց։

— Ընկերներ, — գրնգաց նրա ձայնը, — բանվորական և գյուղացիական հեղափոխությունը, որի անհրաժեշտության մասին ասում էին բոլշևիկները, կատարվեց... Ճնշված մասսաներն իրենք են ստեղծում իրենց իշխանությունը... Այսօրվանից սկսվում է պատմության մի նոր շրջան...

Դահլիճը դղրդաց ծափերի որոտից և նույն պահին Ծովային շտաբի գավթից, «Ավրորա» կրեյսերից և Պետրոպավլովկայի հեռուներից ողջունեցին թնդանոթները, գործարանների հազարավոր սուլիչներն անհողագույն արձագանքեցին, և արձագանքը, որպես նոր պատգամ, սլացավ քաղաքից քաղաք, աշխարհից աշխարհ...

Այսօրվանից ամբողջ իշխանությունը պատկանում է բանվորների, զինվորների և գյուղացիների խորհուրդներին...

Խոսում էր Լենինը։

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍԵՐՈՒՆԴՆԵՐԸ

ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ

Ծիածանվեց շքեղ կամարը երկնքի,
Նորից նայում է մեզ պայծառ Հոկտեմբերը.
Երկիր, տոնում են մեծ հանդեսը քո փառքի,
Քո աննկուն բազմազգ սերունդները։

Նրանց հայրերն արդար եղան բոցակորով,
Ազատության կոփած իրենց կյանքն ու սերը.
Որ դու լինես շքեղ, որ դու լցվես սիրով,
Եվ աճեն քո բազմազգ սերունդները։

Եվ աճեցին նրանք, դարձան հզոր, արի,
Բարձրացրին անդուլ՝ վրսեմ քո շենքերը,
Իրենց ուժն ու կամքը թողին ամեն քարի,
Քո նորահաս, բազմազգ սերունդները։

Երկաթե սիրտ դրին նրանք քո կրծքի տակ,
Ու վառեցին շքեղ բոլոր քո լույսերը,
Բացին քո դեմ բոլոր ճանապարհները փակ,
Քո լուսավոր, բազմազգ սերունդները։

Եվ եղավ մեծ կռիվ, կռիվ Հայրենական,
Ու պենք առան ինչպես իրենց քաջ հայրերը,
Եվ մեծ հաղթանակով նորից քո գիրկն եկան
Քո քաջարի, բազմազգ սերունդները։

Եվ թե հնչի նորից քո կանչը սրբազան,
Ու վըտանգվեն կրկին քո լույս սահմանները,
Կըբարձրանան հզոր մեր լեռների նման
Քո հաղթական, բազմազգ սերունդները։



## Ո՞Վ ԷՐ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ ԼԱՎ ԱՊՐՈՒՄ

Յոթը մուժիկներ՝ Նեկրասովի յոթը հերոսները․ վիճում էին, թե Ռուսաստանում ո՞վ է լավ ապրում: Մեկն ասում էր՝ կալվածատերը․ մյուսն ասում էր՝ չինովնիկը․ երրորդը թե՝ տերտերը: Հիշում էին վաճառականին ու պալատականին, ազնըվականին և իրեն՝ թագավորին, բայց ոչ ոք գյուղացուն ու բանվորին չէր մտաբերում: Եվ ի՞նչպես կարող էին մտաբերել նըրանց, երբ ամենից վատ ապրում էին հենց նրանք՝ բանվորներն ու գյուղացիները:

# ԱՌԱՋԻՆ



Իսկ բարիքները նրանք էին ստեղծում: Ո՞վ էր արտերը հերկում, ցորենը հնձում ու կալսում, պարզ է՝ գյուղացին․ ո՞վ էր անասուններ պահում՝ արածացնում հոտերն ու երամակները․ աճեցնում անտառներ ու կտավատ ցանում, իհարկե, նորից գյուղացին: Ո՞վ էր նավերը քարշ տալիս գետերով․ ո՞վ էր հողի մութ ընդերքից հանում ածուխն ու պղինձը, ո՞վ էր վաղ լուսաբացից մինչև մութ գիշեր աշխատում գործատանը․ ո՞վ էր տայգաներով երկաթուղի անցկացնում՝ բանվորը:



Բայց ոչ ոք չէր կարող ասել, թե նրանք լավ էին ապրում Ռուսաստանում: Ընդհակառակը՝ բանվորներն ու գյուղացիները ուղղակի չարքաշ կյանք էին վարում: Առանց այն էլ հետամնաց Ռուսաստանում, ուր ամեն տարի երաշտ էր լինում և մորեխներն էին ոչնչացնում արտերը․ ապրուստի միջոցները քիչ էին, և այդ քիչն էլ ընկնում էր ժողովրդի արյունը ծծող տզրուկների ձեռքը: Իսկ նրանք կուշտ էին ու բավարարված և իրենց հպատակների մասին ամենևին չէին ուզում մտածել:

Բանվորից ու գյուղացուց տանում էին բոլորը՝ չինովնիկներն ու վաճառականները, իշխաններն ու պալատականները և ամենամեծ հարստահարողը՝ թագավորը: Դրա համար էլ անծայրածիր Ռուսաստանում մըշտապես թագավորում էին սովն ու համաճարակները, անգրագիտությունն ու խավարը: Դպրոցները քիչ էին, և այդ քչերում էլ սովորում էին հարուստների զավակները, հիվանդանոցները շատ քիչ էին, և նրանցում բուժվում էին հարուստները:

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆ ԸՄԲՈՍՏԱՆՈՒՄ Է

Առանձնապես վատ էր վիճակը Ռուսաստանում ապրող ուրիշ ժողովուրդների ու ազգերի: Իզուր չէ, որ Ռուսաստանը ժողովուրդների բանտ էր համարվում: Եթե ռուսների համար էլի կային փոքրաթիվ դպրոցներ, ապա այլազգիների համար սեփական լեզվով ոչինչ չկար: Թաթարներն ու հրեաները, ուկրաինացիներն ու բելոռուսները, հայերն ու վրացիները, բաշկիրներն ու ուդմուրտները, ղազախներն ու կիրգիզները և էլի շատ ուրիշ ժողովուրդներ դատապարտված էին հավիտյան խավարի ու սարկության: Նրանց զավակները, այն էլ արտոնյալները, կարող էին սովորել միայն ռուսերեն: Շատերը չունեին իրենց գիրն ու գրականությունը, թատրոնն ու արվեստը: Իսկ ովքեր էլ որ գիր ու գրականություն ունեին՝ ենթարկվում էին հալածանքների: Ցարական իշխանությունները փակում էին դպրոցները, բանտարկում ուսուցիչներին ու ժողովրդական գործիչներին: Շատ ժողովուրդներ զրկված էին քաղաքական իրավունքներից, իսկ շատերն էլ

հալածական կյանք էին վարում. քոչում էին մի տեղից մյուսը: Դժոխքը ոսկորին էր հասել: Այլևս հնարավոր չէր այդպես շարունակել. պետք էր պայքարել սեփական իրավունքների համար: Սակայն ցարական ժանդարմները քնած չէին: Անմիջապես բռնվում ու բանտ էին նետվում բոլոր նրանք, ովքեր կհամարձակվեին հանդես գալ թագավորի ու նրա մինիստրների

էր պահանջում: Եվ Լենինը որոշեց իր կյանքը նվիրել հեղափոխության գործին:

Ցարը և նրա գործակալները շուտով գլխի ընկան, որ Լենինը կարող է ժողովրդին հանել իրենց դեմ. և սկսեցին հետապնդել նրան: Սակայն ո՛չ բանտը, ո՛չ աքսորը և ո՛չ էլ հայրենիքից հեռու գտնվելը չկարողացան ընկճել նրան, չխանգարեցին, որ Լենինը կատարի իր պարտքը:



# ԱՇԽԱՐՀՈՒՄ

դեմ: Չնայած դրան, ռուս ժողովրդի լավագույն որդիները ելնում էին պայքարի: Նրանք գիտեին, որ պետք է ժողովրդին ոտքի հանել. դրա համար էլ բացատրում էին մարդկանց, թե ով է նրանց իսկական թշնամին, ով է խլում նրանց բերանի հացը: Բայց թագավորը և նրա ժանդարմները քնած չէին: Բռնում և աքսոր էին ուղարկում հեղափոխականներին. սակայն չէին կարողանում ընկճել նրանց: Նրանք հավատում էին, որ կգա ազատության օրը և ժողովուրդը թագավորի լուծը կթոթափի:

## Վ. Ի. ԼԵՆԻՆ

Հարյուրավոր մարդիկ կախաղան բարձրացան, տասնյակ հազարավորներ մեռան ցարական բանտերում և ցրտաշունչ Սիբիրում, բայց պայքարը չդադարեցրին: Շատերը գիտեին, որ ազատություն ձեռք բերելու համար հարկավոր է տապալել թագավորին ու նրա իշխանությունը, բայց չգիտեին, թե ինչպես պետք է այդ անել: Լենինն էր, որ ասաց, թե պետք է կազմակերպված, ուժեղ կուսակցություն ստեղծել: Եվ նա ստեղծեց բոլշևիկների կուսակցությունը: Իհարկե, դա այնքան էլ հեշտ բան չէր և մեծ անձնազոհություն



Նա արտասահմանում թերթեր ու թռուցիկներ էր տպագրում և ուղարկում Ռուսաստան. այնտեղից ղեկավարում էր կուսակցության աշխատանքը:

Իսկ ժողովրդի վիճակը քանի գնում ավելի էր վատանում, որովհետև սկսվել էր Առաջին համաշխարհային պատերազմը. աշխատող ձեռքերը զինվորներ էին դարձել ու գտնվում էին պատերազմի դաշտում:

Լենինը բանվորներին ու գյուղացիներին ասաց. «Ո՞ւմ համար եք աշխատում», զինվորներին ասաց. «Ո՞ւմ համար եք կռվում, ու՞մ համար եք արյուն թափում: Ձեր հրացանները շուռ տվեք նրանց դեմ, ովքեր ձեզ կռվի դաշտ են բերել, ովքեր ծծում են ձեր արյունը, հարստահարում են ձեզ»:

Իսկ Լենինին ժողովուրդը լսում էր, որովհետև հավատում էր նրան, գիտեր, որ նա է իրենց հույսն ու ապավենը:

## ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՌԱՋԻՆԸ

1917 թվականի հոկտեմբերի 25-ին, նոր տոմարով՝ նոյեմբերի 7-ին, Լենինի ազդանշանով «Ավրորա» հածանավը կրակ բաց արեց Ձմեռային պալատի վրա: Թագավորին գահընկեց անելուց հետո այնտեղ բույն էր դրել կերենսկու ժամանակավոր կառավարությունը:





Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Իշխանությունը իր ձեռքը վերցնելուց հետո բուրժուական ժամանակավոր կառավարությունը ոչնչով չէր թեթևացրել ժողովրդի վիճակը: Բայց չէ՞ որ ժողովուրդն էր տապալել թագավորին: Ստացվեց այնպես, որ թագավորին գահընկեց անելուց հետո էլ ժողովուրդը օգուտ չստացավ, ժամանակավոր կառավարությունը չարդարացրեց իրեն. շարունակեց քայքայիչ պատերազմը. իշխանությունը ժողովրդի ձեռքը չտվեց:

«Ավրորայի» համազարկից հետո ոտքի ելան զինված բանվորները և տապալեցին ժամանակավոր կառավարությունը:

Դա հենց Հոկտեմբերյան հեղափոխությունն էր. աշխարհում առաջին սոցիալիստական հեղափոխությունը:

Առաջին անգամ աշխարհում ժողովուրդն ի՛նքն անցավ իշխանության գլուխ, ի՛նքն ընկրեց վարել կառավարությունը, իր տնտեսությունը: Կապիտալիստները երբ այս տեսան, սարսափեցին: Նրանք վախենում էին, թե իրենց երկրներում էլ կարող է հեղափոխություն ծագել. որ իրենց երկրների աշխատավորներն էլ կարող են Ռուսաստանի օրինակով թոթափել ճնշողների լուծը: Եվ նրանք բոլորը միացած հարձակվեցին մեր երկրի վրա, ուզեցին հեղափոխությունը խեղդել. բայց դա նրանց չհաջողվեց: Ժողովուրդը ոտքի ելավ և պաշտպանեց իր մեծ նվաճումը, սովետական կարգերը:

Աշխատավոր ժողովուրդն ընկրեց լիաթոք շնչել. դարձավ իր աշխատանքի և իր բախտի տերը:

Ահա թե ինչու 50 տարում Սովետական երկիրը դարձավ աշխարհի ամենահզոր տերությունը: Այժմ մեր տիեզերանավերն ու արբանյակները ճեղքում են տիեզերական տարածությունները. լուսանկարում Լուսնի հակառակ կողմը. վայրէջք են կատարում նրա վրա, հասնում Մարսին ու Վեներային: Ամբողջ աշխարհի առաջավոր մարդկությունն այժմ մեզ է նայում՝ հաղթանակած սոցիալիզմի հզոր երկրին: Ամենուր մենք այժմ առաջինն ենք, ինչպես որ կատարեցինք աշխարհում առաջին սոցիալիստական հեղափոխությունը: Դրա համար էլ մեզ հետ մեկտեղ այսօր մեր աքանչելի տոնը տոնում են երկրագնդի բոլոր աշխատավոր մարդիկ:

# ԼԵՆԻՆԻՆ

*ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆ*

Կայիր աշխարհում, երբ ես չկայի,
Իսկ երբ ծնվեցի՝ չկայիր արդեն,
Սակայն քո գործով դու մեր աշխարհի
Եվ իմ սերնդի բախտն էիր հարթել...

Դու մեզ ժպտացիր դեռ օրորոցում,
Դարձար մեր հոգու երազն առաջին,
Դու մեզ կոչեցիր դեպի ուսուցում,
Դարձար մեր սերը և դասն առաջին...

Քո ալ դրոշի ծփանքի ներքո
Մեր նոր սերունդը բարձրացավ, աճեց.
Բարձունքներ առավ հաղթության երգով
Եվ երջանկության բերդեր նվաճեց...

Մեր երգն ես եղել, երգը առաջին,
Սերը հայրենի և հուրը վառման,
Իսկ հայրենիքի փրկության կանչին՝
Առաջին բառն ես եղել մեր երդման...

Քո անունով ենք գնացել ի մարտ,
Հաղթել՝ մրրկող կրակի տակին,
Եվ մեր արյունն է երդումի պես թանկ
Ձուլվել դրոշիդ կարմիր ծփանքին...

Քո անունն է մեր դրոշին բոսոր,
Քո մեծ անունն է մեր սրտի միջին,
Քո անունով է պայթելու հզոր՝
Հինը կործանող ականը վերջին...

# Ա Ռ Ա Ջ Ի Ն   Օ Ր Ը

Զ. ՎՈՍԿՐԵՍԵՆՍԿԱՅԱ

Կիսախավարի մեջ թաղված Պետրոգրադում այդ գիշեր պայծառ լուսավորված էին միայն Ձմեռային պալատն ու Սմոլնին:

Սառնորեն պսպղում էին Ձմեռային պալատի հայելավոր ապակիները, ասես ներսում պարահանդես էր տեղի ունենում: Սակայն ոչ երաժշտություն կար և ոչ էլ կառքեր էին շարված շքամուտքի մոտ: Միայն յունկերական պարեկներն էին խախտում լռությունը՝ պայտած սապոգները խփելով սալահատակին: Երբեմն էլ պալատի առաջ կանգ էր առնում մի ավտոմեքենա, որից դուրս եկող սպաները սրերը ձեռքներին բռնած՝ սլանում էին Ձմեռայինի ուժեղ արձագանքվող միջանցքով և գնում դեպի Մալախիտյան դահլիճը: Այնտեղ նիստ էր անում Ժամանակավոր կառավարությունը: Օրակարգում կար մի հարց. ինչպես խեղդել հեղափոխությունը:

Սմոլնին լուսավորված էր ոչ միայն ներսից: Հրապարակում վառվող վիթխարի խարույկներից պարզ երևում էր ամբողջ շենքը:

Հրապարակը լեփ-լեցուն էր զինված բանվորներով, նավաստիներով ու զինվորներով: Կըրընկի վրա լայն բաց արած դարբասից բեռնատարներով անվերջ գալիս էին նորանոր ջոկատներ:

Սմոլնիում գործում էր Ռազմա-հեղափոխական կոմիտեն:

Երկու թշնամական բանակներ պատրաստվում էին վճռական գոտեմարտի:

Ժամանակավոր կառավարությունը հրաման էր տվել բաց անել Նևայի կամուրջները, որպեսզի իրարից անջատեր բանվորական ուժերը, հեղափոխական ամենավտանգավոր Վիբորգյան շրջանը կտրեր հեղափոխության շտաբ Սմոլնուց և մյուս բանվորական շրջաններից: Ժամանակավոր կառավարությունը մտադիր էր ձերբակալել Ռազմա-հեղափոխական կոմիտեին. յունկերական պարեկները տակնուվրա էին անում քաղաքը, որ գտնեն և գլխատեն հեղափոխությունը:

Կուսակցության ցուցումով Վլադիմիր Իլյիչը գտնվում էր ընդհատակում և բանվոր դասակարգին նախապատրաստում վճռական մարտի: Կարևորն այն էր՝ բաց չթողնել զինված ապստամբության ամենահարմար պահը: Եվ ահա վրա հասավ այդ պահը: «Այլևս սպասել չի կարելի: Հարկավոր է իսկույն գործի անցնել: Ապստամբությունն ուշացնելը մահվան է հավասար»,—վճռեց Վլադիմիր Իլյիչը, երբ նրան հայտնեցին, թե Ժամանակավոր կառավարությունը պատրաստվում է դուրս գալ հեղափոխության դեմ:

Լենինը հրաժեշտ տվեց Սերդոբոլյան փողոցում գտնվող այն բնակարանին, որ նրա վերջին ընդհատակն էր: Նա գրիմվեց, դրեց կեղծամ, կապեց այտը՝ իբր ատամն է ցավում, և գնաց դեպի Սմոլնի: Ճանապարհին ոչ ոք նրան չճանաչեց: Հասավ Սմոլնի, կեպին կախեց կախիչից, կողքին էլ՝ կեղծամը:

Այժմ արդեն զինված ապստամբությունը գրո-



նվում էր ամուր, խիզախ ձեռքերում: Վլադիմիր Իլյիչը ապստամբության պլանը մշակել էր ամենայն մանրամասնությամբ և Սմոլնի հասնելուն պես ասես միացրեց հեղափոխության հոսանքալարը: Մոտոցիկլետներն ու հեծանիվները շտապ մեկնեցին շրջանները՝ իրենց հետ տանելով ապստամբության սկսելու հրամանը: Շարժվեցին բանվորական ջոկատները: «Նևայի կամուրջները գրավված են,— զեկուցում էին ջոկատների հրամանատարները:— Հեռագրատունը վերցված է», «Կայարանները մեր ձեռքում են», «Հեռախոսային կայանը Սմոլնու տրամադրության տակ է»... Բանվորական ջոկատը գրավեց էլեկտրակայանը, և Ձմեռային պալատը իսկույն թաղվեց խավարի մեջ: Հայելավոր ապակիների հետևում սկսեցին պլպլալ մոմերի թույլ կրակները:

Լուսաբացը դեռ հեռու էր, բայց Վլադիմիր Իլյիչն արդեն գրել էր Ռուսաստանի քաղաքացիներին ուղղված Ռազմա-հեղափոխական կոմիտեի կոչը, որն ամբողջ աշխարհով մեկ ազդարարում էր, թե Պետրոգրադում իշխանությունը անցել է Ռազմա-հեղափոխական կոմիտեի ձեռքը:

Իսկ ցերեկվա ժամը 2-ն անց 30 րոպեին Վլադիմիր Իլյիչը Սմոլնու լեփ-լեցուն դահլիճում ասաց. «Բանվորների և գյուղացիների հեղափոխությունը իրականացվեց»: Ցնծագին բացականչությունները պոռթկացին դեպի հրապարակ և հեռախոսալարերով, հեռագրալարերով ու ռադիոյով սավառնեցին ամբողջ հողագնդում:

Երեկոյան դեմ Ժամանակավոր կառավարությունը, որ դադարել էր կառավարություն լինելուց և դեռ շարունակում էր իր նիստը, հրաժարվեց անձնատուր լինել: Բանվորներն ու նավաստիները գրոհով վերցրին Ձմեռային պալատը, ձերբակալեցին մինիստրներին և առավոտյան ժամը 4ի-մոտերքը Սմոլնիում հավաքված Սովետների համագումարը զեկույց ընդունեց Ձմեռային պալատի գրավման մասին:

Բացվեց հոկտեմբերի 26-ի առավոտը: Վլադիմիր Իլյիչը արդեն երկու գիշեր է՝ չէր քնել:

Ընկերները համառորեն պնդում էին, որ նա պետք է հանգստանա: Վլադիմիր Իլյիչը համաձայնում է քնելու գնալ մի քանի ժամով: Իսկ ո՞ւր. միայն թե Սմոլնուց հեռու չլինի: Բոնչ-Բրուևիչի տանը: Նադեժդա Կոնստանտինովնան արդեն այնտեղ է:

— Քնել, քնել,— վճռականորեն ասում է Կրուպսկայան,— հետո կխոսենք:

— Լավ, կքնեմ,— համաձայնում է Վլադիմիր Իլյիչը:

Նա մտնում է սենյակը, անկողնու վրայից վերցնում է վերմակը, հանգցնում լույսը, աղմուկով հանում ծանր կոշիկները: Ապա նստում է մահճակալին և դռան արանքից նայում, թե երբ, վերջապես, Բոնչ-Բրուևիչը պիտի պառկի քնելու:

Դռան արանքի լուսավոր շերտը ձուլվեց խավարին:

Տունը պառկած՝ Վլադիմիր Իլյիչը մոտեցավ գրասեղանին, սեղանի լամպը ծածկեց լրագրով և վառեց լույսը: Ականջ դրեց. ամեն ինչ կարգին է:

Սեղանին դրված թղթերի միջից ընտրեց մի լավ թերթ, սովորույթի համաձայն մատները տարավ դեպի քունքերը, որպեսզի ուղղի կեղծամը: Բայց կեղծամը չկար, և նա ժպտաց:

Վլադիմիր Իլյիչը զգուշորեն գրչածայրը թաթախեց թանաքամանի մեջ:

Ժողովուրդը հեղափոխություն արեց և հաղթեց, ուրեմն անհապաղ պետք է վայելի իր պայքարի պտուղները: Լամպի լույսից կապույտ կայծով բռնկված գրչածայրը հպվեց թղթին և քարացավ.

«Ինչպե՞ս կոչել,— խորհում էր Վլադիմիր Իլյիչը:— Շատ կարևոր է, թե ինչպես կոչել... Եվ իսկույն եղավ վճիռը: Սպիտակ թղթի վրա ծնվեցին հետևյալ բառերը.

ԴԵԿՐԵՏ ՀՈՂԻ ՄԱՍԻՆ

Դա նոր իշխանության՝ բանվորների և գյուղացիների իշխանության առաջին օրենքն էր:

«Հողի նկատմամբ կալվածատիրական սեփականությունը անհապաղ վերանում է առանց հատուցման»:

Գրեց և բերկրալի զգացումից կկոցեց աչքերը...

Անծայրածիր Ռուսաստանի միլիոնավոր գյուղացինե՛ր, դեռևս երեկ դուք ընչազուրկ բատրակներ էիք, աղքատներ,

ИЗВѢСТІЯ
Центральнаго Исполнительнаго Комитета
и Петроградскаго Совѣта
Рабочихъ и Солдатскихъ Депутатовъ.

Декретъ о мирѣ,
принятый единогласно на засѣданіи Всероссійскаго Съѣзда Совѣтовъ Рабочихъ, Солдатскихъ и Крестьянскихъ Депутатовъ
26 октября 1917 г.

ИЗВѢСТІЯ
Центральнаго Исполнительнаго Комитета
и Петроградскаго Совѣта
Рабочихъ и Солдатскихъ Депутатовъ.

ДЕКРЕТЪ О ЗЕМЛѢ

կալվածատիրական ճորտեր։ Ձեր փոքրիկ հողակտորները, որ ամենավատն էին, ծվարել էին կալվածատերերի հսկայական դաշտերի կողքին։ Այն հողը, որ մշակում էիք դուք, գերության մեջ էր։ Անհասանելի էր ձեզ այդքա՜ն ցանկալի ու անհրաժեշտ հողը։ Գյուղի աշխատավորներ, դուք առավոտյան կարթնանաք որպես ազատ երկրի ազատ քաղաքացիներ։ Այն հողը, որ դուք էիք մշակում, այժմ ձերն է…

Պարզ և ուղիղ շարքով թղթի վրա կենդանություն էին առնում հասարակ և իմաստուն բառերը։

Հեղափոխության հաղթանակով 1917 թվականի հոկտեմբերի 26-ի լուսաբացին իրականացավ գյուղացու դարավոր երազանքը…

Վլադիմիր Իլյիչը բռնեց թղթի անկյուններից, մի քիչ բարձրացրեց և հաճույքով սկսեց նայել։ Նա իրեն շատ երջանիկ էր զգում։ Երջանիկ, ինչպես երբեք, և նրա համար դժվար էր իր երջանկության հետ միասին մենակ լինել։ Նա զգուշորեն կիսաբաց արեց դուռը, ոտնաթաթերի վրա Բոնչ-Բրուևիչի սենյակի միջով անցավ ճաշասենյակը, որտեղ գտնվում էր Նադեժդա Կոնստանտինովնան։ Նա էլ քնած չէր. կանգնած էր լուսամուտի մոտ։ Կրուպսկայան ոչ զարմացավ և ոչ էլ նրան հանդիմանեց չքնելու համար։ Մի՞թե այդպիսի գիշեր մարդու քուն կտանի։

— Նադյուշա, ուզու՞մ ես իմանալ, թե որն է նոր իշխանության առաջին օրենքը։

Օրե՞նք, — հոնքերը վեր բարձրացրեց Նադեժդա Կոնստանտինովնան, — Իսկ չի՞ կարելի այլ կերպ ասել։

— Դու իրավացի ես։ Ես էլ էի մտածում, թե ինչ անուն տամ։

«Օրենք» բառը ատելի է դարձել ժողովրդին։ Այն կապված է անօրենություններով լի ցարական Ռուսաստանի, հակահեղափոխական ժամանակավոր կառավարության հետ։ Օրենքները հրապարակվել են ժողովրդի դեմ։

— Ես այս օրենքը կոչեցի դեկրետ, — ասաց Վլադիմիր Իլյիչը։

— Դեկրետ… Դեկրետում… — կրկնեց Նադեժդա Կոնստանտինովնան։ — Խոսք չունեմ, շատ լավ է, թեև ռուսերեն չէ, այլ՝ լատիներեն։ Բայց այդպես էին կոչվում օրենքները ֆրանսիական հեղափոխության ժամանակ… Իսկ ինչի՞ մասին է այդ առաջին օրենքը։

Նադեժդա Կոնստանտինովնան Վլադիմիր Իլյիչի ձեռքից վերցրեց թուղթը և կարդաց սկզբում կամաց, ապա տարվեց բովանդակությամբ և սկսեց ձայնը ավելի ու ավելի բարձրացնել։ Նա շուտ-շուտ դեմքից սրբում էր արտասուքը, որ խանգարում էր կարդալուն։ Հողը, անտառները, ջրերը, երկրի ընդերքը (հանքերը, նավթը, քարածուխը) դառնում են ժողովրդի սեփականություն։

— Սա հոյակա՜պ է, — բացականչեց նա։

— Սա հիանալի՜ է։ Հրաշալի՜։

Նադեժդա Կոնստանտինովնան և Վլադիմիր Իլյիչը սթափվեցին։ Ճաշասենյակի դռան մոտ կանգնած էր Բոնչ-Բրուևիչը։ Մի՞թե կարելի էր քնել այդպիսի գիշեր։

— Իսկ ինձ թվում է, — շարունակեց Բոնչ-Բրուևիչը, — որ դուք պետք է մտածեք այն օրենքի մասին, որն արդեն գոյություն ունի. ութժամյա աշխատանքային օրվա մասին։ Իսկ ձեր օրը շարունակվում է արդեն մոտավորապես հիսուն ժամ անընդմեջ։

— Օրենք կա, բայց դեկրետ չկա, — ծիծաղելով առարկեց Վլադիմիր Իլյիչը։ — Ամենից առաջ թույլ տվեք ձեզ շնորհավորել սովետական իշխանության առաջին օրվա առթիվ։ Եվ հետո՝ ժամանակը չէ՞ արդյոք, որ վերադառնանք Սմոլնի։

Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ






# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՕՐԵՐԻՆ

1917 թվականի հոկտեմբերի 20-ին (նոյեմբերի 2-ին) Ռազմա-հեղափոխական կոմիտեն, որը գլխավորում էր Ժամանակավոր կառավարության դեմ նախապատրաստվող ապստամբությունը, Սմոլնի կանչեց բոլշևիկ Միքայել Տեր-Հարությունյանցին և նրան նշանակեց Պետրոպավլովյան ամրոցի կոմիսար՝ Հոկտեմբերյան հեղափոխության առաջին կոմիսարը:

Ամրոցն ուներ զինվորներ, զենք, զինանոց, որտեղ պահվում էր հարյուր հազար հրացան: Ամրոցն ուներ հրամանատար և սպաներ, որոնք Կերենսկու կառավարության համատարիմներն էին և չէին ուզում ճանաչել ոչ մի Ռազմա-հեղափոխական կոմիտե: Կոմիսարը պետք է ներկայանար ամրոց և կառավարումը վերցներ իր ձեռքը, որպեսզի առանց նրա թույլտվության ոչ մի հրացան դուրս չբերվեր ամրոցից, որպեսզի ամբողջ զենքը բաժանվեր կարմիրգվարդիականներին, որպեսզի այդ հզոր ամրոցը միայն բոլշևիկներին ենթարկվեր:

Տեր-Հարությունյանցը ստացավ ՌՀԿ-ի մանդատը և մեկնեց առաջադրանքը կատարելու:

Իսկ Սմոլնի շարունակ գալիս էին նոր մարդիկ, բոլշևիկների մեջ ամենահայտնիները, ամենանըվիրվածները: Մեկը մյուսի ետևից նրանք էլ էին ստանում այդպիսի մանդատներ և դառնում գընդերի, զումարտակների, ռազմական ուսումնարանների, գործարանների, կարևոր հիմնարկների կոմիսարներ:

Մանդատներ տրվեցին մինչև ուշ երեկո, ամբողջ գիշերը: Հոկտեմբերի 21-ի առավոտյան Ռազմա-հեղափոխական կոմիտեն արդեն նշանակել էր հիսունմեկ կոմիսար:

Ժամանակ առ ժամանակ կոմիսարները զեկույցներ էին ուղարկում ՌՀԿ: Բարեբախտաբար այդ փաստաթղթերի մեծ մասը պահպանվել է:

Ծիծաղելի կլիներ նույնիսկ մտածել, որ Տեր-Հարությունյանցը մենակ կարող էր գրավել... Պետրոպավլովյան ամրոցը և դեռ Կրոնվերկյան զինանոցն էլ հետը: Եթե նրան զորագունդ կամ դիվիզիա էլ տային, դարձյալ դժվար թե կարողանար հրամանը կատարել:

Բայց Տեր-Հարությունյանցը այնուամենայնիվ մենակ գնաց, և հենց նույն օրը երեկոյան ամրոցն ու զինանոցը ՌՀԿ-ի ձեռքումն էին:

Որովհետև նա գնացել էր բոլշևիկ զինվորների մոտ, հավաքել էր նրանց և բացատրել, թե ինչումն է կայանում գործը: Իսկ ամբողջ կայազորը վաղուց արդեն բոլշևիկների կողմն էր:



«Ամրոցի և զինանոցի կուսակցական միացյալ ժողովից հետո ես հենց նույն օրը, այսինքն հոկտեմբերի 20-ին, եղա ամրոցի պարետի՝ գնդապետ Վասիլևի մոտ, ցույց տվեցի նրան իմ կոմիսարական մանդատը... և զգուշացրեցի, որ «այս րոպեից ամրոցի պարետի ոչ մի հրաման ուժի մեջ չի առանց իմ հաստատման»: Գնդապետ Վասիլևը պատասխանեց, որ ինքը միայն Ժամանակավոր կառավարությանն է ճանաչում... Այն ժամանակ ես կտրականապես հայտարարեցի գնդապետ Վասիլևին, որ... ամրոցում առանց իմ թույլտվության որևէ հրաման տալը ծանր հետևանքներ կունենա իր համար: Գնդապետ Վասիլևը գունատվեց և լռեց: Ես գնացի Կրոնվերյան զինանոց...»— հետագայում գրել է կոմիսար Տեր-Հարությունյանը:

Մի ժամից հետո զինանոցի դարբասների մոտ երևացին յունկերները: Նրանք Ժամանակավոր կառավարության կարգադրությամբ եկել էին ստանալու հազար հրացան և մի քանի տասնյակ գնդացիր: Բարկացան, պահանջեցին պարետին: Սպառնում էին ուժով վերցնել զենքը: Տեր-Հարությունյանը ցույց տվեց նրանց ուղղված գնդացիրն ու ասաց.

— Ուժին ուժով ենք պատասխանում: Ձեզանից ոչ մեկը այստեղից կենդանի չի վերադառնա:

Սպան մի պահ մտածեց, ապա յունկերների հետ հեռացավ:

Կրոնվերյան զինանոցի հրացանները բաժանեցին Կարմիր գվարդիայի գնդերին:

## «ԱՎՐՈՐԱՅԻ» ՀԱՄԱԶԱՐԿԸ

«Ավրորա» հածանավը ապստամբությունից քիչ առաջ նորոգել էին, և հոկտեմբերի 22-ին նա պետք է հեռանար Պետրոգրադից, որպեսզի փորձարկեին մեքենաները:

Բայց Բալթիկական նավատորմի Կենտրոնական կոմիտեն թույլ չտվեց: Նավաստիներին զգուշացրին՝ պատրաստ լինել... Հոկտեմբերի 24-ին հածանավ ժամանեց կոմիսար Ա. Բելիշևը: Նա հրաման էր ստացել՝ գրավել Նիկոլաևյան կամուրջը: Դրա համար պետք էր «Ավրորան» մոտեցնել կամուրջին: Ծովագնացները պատրաստվել էին բարձրացնել խարիսխը, բայց հրամանատարը հրաժարվեց վարել նավը: «Հածանավը այնտեղից չի անցնի»,—հայտարարեց նա: Կոմիսարը հրամայեց շտապ չափել Նևայի նավուղու խորությունը: Չափեցին և պարզվեց, որ «Ավրորան» ազատ կարող է անցնել:

Չափումները ձեռքին՝ կոմիսարը ներկայացավ հրամանատարին, բայց սա... նորից մերժեց:

Բելիշևը ստիպված ձերբակալեց բոլոր սպաներին: Միայն այդ ժամանակ հրամանատարը համաձայնեց քշել նավը:

«Երեկոյան, — գրում է կոմիսարը իր զեկույցում, — Ռազմա-հեղափոխական կոմիտեից հրահանգ ստացանք՝ գնդացրային ազդանշանային կրակոցներից հետո մի քանի անգամ օդում ազատ կրակել, իսկ անհրաժեշտության դեպքում իսկական կրակ բացել»:

Սակայն դրան դիմելու հարկ չեղավ, քանի որ Ձմեռային պալատը շատ շուտ հանձնվեց:

Ահա այսպես ծնվեցին «Ավրորայի» հռչակավոր կրակոցները:

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



# Հ Ո Կ Տ Ե Մ Բ Ե Ր Ը

Հայաստանը հազարամյակների պատմություն ունի, սակայն միայն Հոկտեմբերը երջանկություն բերեց հայ ժողովրդին: Հիսուն տարվա ընթացքում Հայաստանը չտեսնված հաջողությունների հասավ: Ահա մի քանի համառոտ, բայց և շատ խոսուն փաստեր:

Երբ սովետական կարգեր հաստատվելուց հետո գյուղական խորհուրդներ էին ընտրվում, Հայաստանի մի շարք լեռնային գյուղերում գյուղսովետի քարտուղար նշանակելու համար չէին կարողանում մի գրագետ մարդ գտնել: Բարձրագույն ուսումնական հաստատություններ Հայաստանում բոլորովին չկային:

Այժմ մեզ մոտ անգրագետ մարդիկ չկան: Հանրապետությունը 1300 միջնակարգ դպրոց, 45 տեխնիկում և 11 բարձրագույն ուսումնական հաստատություն ունի:

* * *

Սովետական կարգեր հաստատելու նախօրեին Հայաստանում ոչ մի գիտական հիմնարկ չկար: Հայ գիտնականները Ռուսաստանում և աշխարհի այլ երկրներում էին աշխատում:

Այժմ Հայաստանը իր գիտությունների ակադեմիան ունի և հարյուրից ավելի գիտական հիմնարկներ, ութ հազար գիտական աշխատողներով: Նրանցից մոտ երկու հազարը գիտության թեկնածուներ են, երկու հարյուր հիսունը՝ գիտության դոկտորներ:

Գիտնականների որոշ մասը իր աշխատություններով հայտնի է ամբողջ աշխարհում: Ակադեմիայի պրեզիդենտ Վիկտոր Համբարձումյանը տասը օտար երկրների ակադեմիաների և մի քանի աստղագիտական ընկերությունների պատվավոր անդամ է: Նա Միջազգային աստղագիտական միության պրեզիդենտն է եղել: Մաթեմատիկոս Սերգեյ Մերգելյանը 20 տարեկան էր, երբ Սովետական Միությունում գիտությունների ամենաերիտասարդ դոկտորը դարձավ:

Մինչև սովետական կարգերի հաստատվելը, Հայաստանում բնակչությունը զբաղվում էր հիմնականում անասնաբուծությամբ և այգեգործությամբ: Արդյունաբերությունից միայն մանր, տնայնագործական պղնձահանքեր և պղնձաձուլական, կաշեգործական, գինու-կոնյակի գործարաններ կային:

Սովետական կարգերի օրոք, Հայաստանում, հայերի համար բոլորովին նոր արդյունաբերության քսան ճյուղեր ստեղծվեցին և մի քանի հազար նոր մասնագիտություններ: Ռեսպուբլիկայում հզոր հիդրո և ջերմաէլեկտրակայաններ են կառուցվել, գործարանները ամեն տեսակի քիմիական նյութեր են արտադրում, ամենաբազմազան գործիքներ, շատ ճշգրիտ սարքեր, էլեկտրական և ամենաբարդ հաշվիչ մեքենաներ, իսկ վերջերս՝ նաև ավտոմեքենաներ:

Մեր գործարանների և ֆաբրիկաների արտադրանքը միջազգային ցուցահանդեսներում ու տոնավաճառներում է ցուցադրվում, և յոթանասուն երկրներ գնում են մեզնից այդ արտադրանքը:

* * *

Չտեսնված ծաղկման է հասել հայկական ազգային արվեստը: Աշխարհի շատ երկրներում ցուցադրվում են Լենինյան մրցանակի լաուրեատ, ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանի նկարները, կատարվում են կոմպոզիտորներ Արամ Խաչատրյանի, Առնո Բաբաջանյանի, Էդվարդ Միրզոյանի ստեղծագործությունները: Մեծ հաջողությամբ են անցնում երգչուհի Գոհար Գասպարյանի, երաժշտական ու պարի կոլեկտիվների ելույթները արտասահմանում:

Հայաստանի հյուրերը Երվանդ Քոչարի Սասունցի Դավիթ քանդակը համարում են հեծյալների



«Եթե ինձանից հարցնեն, թե մեր մոլորակի վրա որտե՞ղ ավելի շատ հրաշքներ կարելի է տեսնել, ես ամենից առաջ Հայաստանը կհիշատակեմ...

Ակամայից զարմանում ես, որ աշխարհի այդ փոքրիկ անկյունում այդպիսի հուշարձաններ կարող ես տեսնել և հանդիպել այդպիսի մարդկանց, որոնք կարող են ամբողջ աշխարհի կարդն ու հպարտությունը համարվել: Երիցս փառք հայկական հողին— մեծ ախրանքների օրորանին»:

ՌՈՔՈՒԵԼ ՔԵՆԹ



# Հ Ա Յ Ա Ս Տ Ա Ն Ի Ն





«Ես շատ ուրախ եմ բազմադարյան պատմություն ունեցող Հայաստան կատարած իմ այցելության համար: Ես գիտեի հայ ժողովրդի ողբերգական անցյալի մասին: Այսօր, այս գեղեցիկ երկրում ես համոզվեցի, որ Հայաստանի ժողովուրդը երջանիկ է ապրում և կառուցում է իր ե՛լ ավելի գեղեցիկ ապագան»:

**ՋԵՅՄՍ ՕԼԴՐԻՋ**



լավագույն արձաններից մեկը, հիանում են Երևանի Լենինի հրապարակով, որը կառուցել են ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանը, նրա աշակերտներն ու հետևորդները, հաճույքով հաճախում են համերգային դահլիճները, դիտում հայկական կինոֆիլմեր:

Հայկական թատերային արվեստը աշխարհում հնագույններից մեկն է համարվում, սակայն հեղափոխությունից առաջ այստեղ պրոֆեսիոնալ ոչ մի թատրոն չըկար: Այժմ Հայաստանում տասնիհինգ թատրոն կա, տասնյակ հռչակավոր դերասաններով:

* * *

89-րդ Հայկական Թամանյան դիվիզիան մարտական հաջող գործողությունների համար, Հայրենական մեծ պատերազմի տարիներին պարգևատրվել է Կարմիր աստղի, Կարմիր դրոշի և Կուտուզովի II աստիճանի շքանշաններով: 105 հայ մարտիկներ Սովետական Միության հերոսի բարձր կոչման են արժանացել, 67 հազար մարդ շքանշաններ և մեդալներ է ստացել:

* * *

Երկու տասնյակից ավելի լեռնաշղթաներ կան Հայաստանում: Հանրապետության տերիտորիայի մոտավորապես երկու երրորդը կբաղեցնում են լեռներն ու քարերը: Առաջներում գտնում էին, որ քարը խանգարում է հայ ժողովրդին, խլում է նրա հողը: Հիմա քարը հայ ժողովրդի հարստությունն է դարձել: Շինարարական հիանալի քարերը՝ տուֆը, մարմարը և բազալտն օգտագործվում են ոչ միայն Հայաստանում, այլև երկրի մյուս քաղաքների նորակառույցներում:

Հայ քիմիկոսները քարից ստանում են ցեմենտ, կաուչուկ, պլաստմասսա, ալյումինիում, բյուրեղ, թել և քիմիական այլ արտադրանքներ:

* * *

Բերենք երկու օրինակ մինչհեղափոխական Հայաստանի տեխնիկայի զարգացման աստիճանի մասին. Երևանի առաջին ջրմուղը կառուցվել է վաթսուն տարում, քաղաքային ձիաքարշ երկաթուղու կառուցման համար մասնագետներ են հրավիրվել Գերմանիայից:

Սովետական Հայաստանի բոլոր նորակառույցները նախագծված և կառուցված են տեղական մասնագետների կողմից, հայրենի երկրում և մայրենի լեզվով: Այժմ Հայաստանում կառուցվում է Արփա—Սևան հիսուն կիլոմետր երկարությամբ թունելը: Այդպիսի հիդրոտեխնիկական կառույց աշխարհում չկա:

* * *

Սովետական Հայաստանում մեծ ուշադրության է արժանացել երեխաների դաստիարակությունն ու հանգիստը: Ինչպես մենք արդեն ասել ենք, հանրապետությունում ունենք 1300 դպրոց: Բացի այդ, ունենք պիոներների և դպրոցականների հիանալի պալատ, որտեղ մեծ թվով խմբակներ կան: Երեխաների համար կան պատանի հանդիսատեսի և տիկնիկային հատուկ թատրոններ, մանկական գրադարաններ և այգիներ, մանկական երկաթուղի, տեխնիկայի կայան, երեխաների գեղարվեստական դաստիարակության տուն, սպորտային, երաժշտական և ուրիշ դպրոցներ:

Երեխաների համար մեծ տպաքանակով գրքեր են հրատարակվում:

Այս բոլորը սովետական իշխանություն հաստատվելուց առաջ չի եղել:

* * *

Նախկին անապատներում ծաղկել են հարյուր հազար հեկտար պտղատու և խաղողի այգիներ, ուժեղ թափով աճել է պահածոների, գինու և կոնյակի արտադրությունը: Հայկական գինու և կոնյակի շատ տեսակներ մեդալներ են շահել միջազգային մրցույթներում:



# Հոկտեմբերյան երգ

Մ. ՌՈՒԴԵՐՄԱՆ

Ողջու՛յն, ողջու՛յն Հոկտեմբերյան
Տոնահանդես սիրելի,
Եվ քե՛զ, դրոշ մեր հաղթության՝
Աշտարակին Կրեմլի։

Դրոշներ ենք մենք ծածանում
Ու երգում ենք ցնծագին,
Մեր երգերն են թռչում հասնում
Կապույտ ու բաց երկնքին։

Հետևակն է խրոխտ քայլում,
Հողն է թնդում տանկերից,
Սավառնակներն անվերջ փայլում
Եվ սլանում են վերից։

Ողջ քաղաքն է ելել ոտի,
Շարասյուներ են ձգվում,
Եվ լույսերում առավոտի
Դրոշներ են աղմկում։

Երեկոն է իջնում կրկին,
Ու սալյուտն է որոտում,
Կարմիր հրթիռ, կապույտ հրթիռ,
Կանաչ հրթիռ կա օդում։

Արշալույս են վառ ու բոսոր
Դրոշները Կրեմլի,
Նոյեմբերի յոթն է այսօր,
Տոնը, տոնը սիրելի...

Թարգմ. Դ. ՎԱՆԻ

# ԵՐԳԻՐ ՔՆԱՐԻՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Գարնան ձայնով, աշուն, երգի՛ր,
Երգդ աշխարհ թող համակի...
Հիսուն տարիդ թռավ, երկի՛ր,
Թափ ու թևով ժամանակի։
Մերթ դառնացած, մերթ անխռով,
Մերթ ժպտալով մեղմ ու բարի,
Քո կեսդարյան ճանապարհով
Ուղի անցար հիսուն դարի։
Լուսածեգին քո գիշերվա
Բյուր բանակներ ելան քո դեմ,
Փակեր դրին ճամփիդ վրա,
Բայց դու անցար խիզախորեն։
Դու խավարում հեռուն տեսար
Քո լենինյան մտքի հրով,
Եվ դավերից անհավասար
Ելար երկինք պայծառ նորով։
Երազանքը քո անարատ
Անցավ՝ միջով ձմռան ու ձյան...
Որդիներդ մահով հպարտ
Աքսորներում անմահացան։
Սիրում եմ քեզ, իմ մայր երկիր,
Քո հերկերն եմ սիրում ծլած,
Ե՛վ ջրերիդ ղողանջը գիլ,
Ե՛վ քո փառքը երկնասլաց։
Ես մի աղբյուր էի կորած,
Լալիս էի քարերի մեջ,
Քո արևի լույսով նորած՝
Իմ խնդումը շատրվանեց։
Հիմա անձայր աստղահեռուն
Քեզ կանչում է ձայնով բարի...
Օ՜, մա՛յր երկիր, հիսուն տարում
Ճամփա անցար հիսուն դարի։

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

# Հ Ո Կ Տ Ե Մ Բ Ե Ր Ի

## ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ

Հոկտեմբերի 25... Ձմեռային պալատի հրապարակ... Պալատի մուտքերը փակված են վառելափայտի բարձր կույտերից կառուցված բարիկադներով։ Ձմեռայինում նստած է բուրժուաների, մենշևիկների և աջ սոցիալիստ-ռևոլյուցիոներների կառավարությունը։ Ութ ամիս երկրին իշխելու ընթացքում այդ կառավարությունն առաջ է բերել բոլոր աշխատավորների ատելությունը, ժողովրդի զայրույթը հասցնելով ապստամբության։

Հոկտեմբերի 25-ին Պետրոգրադում սկսվեց բանվորների ու զինվորների ապստամբությունը։ Ապստամբության հրդեհից թաքնվելով վառելափայտի կույտերի հետևում, յունկերների սվիններով, կանանց գումարտակի և կազակների գնդացիրներով ու հրացաններով պաշտպանվող բուրժուական ժամանակավոր կառավարությունը ռադիոյով օգնության կանչեց։ Նա խոստացավ «մինչև վերջը կատարել իր պարտքը», «փրկել ժողովրդին բոլշևիկներից»։

...ժողովրդի միջից ոչ մեկը օգնության չեկավ բուրժուազիայի կառավարությանը։ Ժողովուրդը շարժվում էր դեպի կառավարությունը, բայց ոչ թե նրան բոլշևիկներից փրկելու, այլ բոլշևիկների հետ, Լենինի ղեկավարությամբ բուրժուազիայի կառավարությունը տապալելու։ Հրացաններով, գնդացիրներով, թնդանոթներով, զրահապատներով զինված ժողովուրդը սեղմում էր օղակը Ձմեռային պալատի շուրջը...

Երեք անգամ պալատ ուղարկվեցին անձնատուր լինելու վերջնագրեր։ Բայց դրանք չընդունվեցին։

— Կրակ Ձմեռայինի վրա, — հրամայեց ապստամբած ժողովուրդը Պետրոպավլովյան ամրոցի մարտկոցներին, «Ավրորա» հածանավի վեցդյույմանոց հրանոթներին... Կարմիր գվարդիականները, նավաստիները, զինվորներն ընթացքի ժամանակ կրակելով, հրացաններով ու գնդացիրներով սլացան դեպի բարիկադները... Կրակին չդիմանալով, կանանց գումարտակը երերաց։

Կրակի փոթորկի մեջ բարիկադների վրա, չգիտես որտեղից, հայտնվեց մի տղա։ Ականջավոր գլխարկը գլխին, ամբողջ ուժով թափահարելով ձեռքերը, տղան մերոնց իր մոտ էր կանչում։ Նա ինչ-որ բան էր բղավում, աշխատելով հրանոթների համազարկերից բարձր գոռալ... Բարիկադներից եկող նրա ձայնը կտրեց անցավ կրակի դղրդյունը։ Բարիկադների վրայից տղան ցույց էր տալիս դեպի պալատը տանող բացվածքը։

Մարդկային ալիքը հորդում էր բարիկադների արանքով։ Չորս կողմը հրաձգություն էր, գոտեմարտ... Կռվի փոթորկի մեջ տղան ճշտորեն կատարում էր հետախույզի, ուղեցույցի իր պարտականությունը։ Բարիկադների միջով հորդացող մարդկանց ալիքը նրան գետին գլորեց։ Բայց նա նորից



# ՀԵՐՈՍ ԵՐԵԽԱՆԵՐԸ

բարձրացավ, ամբողջ հասակով մեկ կանգնեց բարիկադի վրա։ Նա թափահարում էր ձեռքերը, կանչում... Ցույց էր տալիս բացվածքը...

## ՊԱՏԱՆԻ ԱՆԴՐԵԵՎԸ

Մոսկվայի հոկտեմբերյան մարտերում մասնակցում էին բանվորական ամբողջ ընտանիքներ։ Հայրը հրացանը ձեռքին կռվում էր, մայրը նրան ուտելիք էր բերում, երեխաները փամփուշտ էին հասցնում։

Մոսկվայում հոկտեմբերյան մարտերը տևեցին հինգ օր։ Ապստամբության ժամանակ ուժեղ կռիվներ տեղի ունեցան Պրեչիստենկայում։ Այստեղ ըսպիտակգվարդիականների կենտրոնն էր՝ Մոսկվայի զինվորական օկրուգի շտաբը։ Մի փոքր հեռու գըտնըվում էր Ալեքսեևյան ուսումնարանը, որտեղ տեղավորված էին յունկերները։

Պրեչիստենկայում բանվորները խրամատներ փորեցին և դրանց առաջ բարիկադներ սարքեցին։ Շատ դժվարություններ քաշեցին այստեղ պաշտպանները։ Սառնամանիքն ու քաղցը տանջում էին նրանց։ Թեթև հագուստով ու հնամաշ կոշիկներով, բանվորները ստիպված էին օրերով պաշտպանել իրենց դիրքերը։ Նրանք հերթով գնում էին մոտակա թեյարանում տաքանալու։

Մի տղա կար Անդրեև ազգանունով (այս ազգանունը պետք է իմանան և հիշեն բոլորը)։ Բանվորների բացակայության ժամանակ նա մնում էր խրամատում։ Նա անընդհատ կրակում էր տաքանալու գնացած բանվորների մեկ այս, մեկ այն հրացանից։ Իր կրակոցներով Անդրեևն աշխատում էր ցույց տալ յունկերներին, որ բարիկադների բոլոր պաշտպանները տեղերում են, խրամատները դատարկ չեն։ Ցրտից փայտացած ձեռքերով տղան ուսին էր սեղմում հրացանը և կրակում։

Պատահաբար հրացանը նրա ձեռքից ընկավ խրամատի առաջ եղած բարիկադի մյուս կողմը։ Նա դուրս սողաց խրամատից, որպեսզի վերցնի հրացանը, և հենց այստեղ յունկերները գնդացրի գընդակներով ծակծկեցին նրան։ Տղան ստացավ քառասունից ավելի վերք։ երեք օր մաքառում էր մահվան դեմ։

Ուշքի գալով, նա հարցրեց.

— Հը՞, շտաբը վերցրի՞ք։ Յունկերներին ջարդեցի՞ք։

Նրան այցելության եկած կարմիրգվարդիականները պատասխանեցին

— Այո։

Ցնծությունից տղան մոռացավ իր վերքերը։ Ժըպտաց և բարձր կանչեց.

— Ուռա՜...

Մի քանի րոպեից հետո նա մահացավ...

Նկ. Խանկյանի



Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

11
ՆՈՅԵՄԲԵՐ
1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ



Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։*

ՎՖ 05955։ Պատվեր՝ 1510։ Տպաքանակ՝ 42000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 9/X, 1967 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան. Տերյան փ. № 91։

Գինը՝ 10 կ.

## Հոկտեմբերը տվեց մեզ արև ու կյանք,
## Երա՛զանք տվեց, ծով խինդ ու բերկրանք:







Լուսանկարները՝ ՄԻՔԱՅԵԼ ԲԱՂՁԱՐՅԱՆԻ

